րու Դաշնակցութեան ուշադրութիւնը պիտի հրաւիրէ այս հարցին վրայ։

∴ Պուլկարական կառավարութիւնը պատասխանելով Սերպիոյ մեղադրանքներուն, կը հերքէ թէ ինք որ և է ձեւով քաջալերած է «կոմիտաճի»ները։ Կը հաւաստէ թէ ամէն ճիգ կը թափէ որպէսզի մակեդոնական յեղափոխականները դադրեցնեն իրենց գործունէութիւնը։ Ինչ կը վերաբերի այն մեղադրանքին թէ Մակեդոնացիները զէնք ստացած են խորհրդային իշխանութենէն, Պուլկարիա պատրաստակամութիւն կը յայտնէ գործակցելու Եուկօսլաւիոյ կառավարութեան, ի դերեւ հանելու համար Մոսկուայի դաւերը։ Յետոյ, Պուլկարիա կը հարցնէ թէ ինչու իր դրացիները, որոնք բանակներ ունին, իրենք չեն պաշտպաներ իրենց սահմանները։ Ռումանիա այդ ուղղութեամբ որոշում տուած է արդէն եւ Պուլկարիա խորհուրդ կ՚ու տայ որ Եուկոսլավիան ալ այնպէս ընէ։

## Կրօնաւորները կը շարունակեն կռիւը

Կաթոլիկ կղերականները Նախագահ Քալլէսի դիմելով, խնդրած էին որ զինադուլ մը կնքուի և ժողովրդային քուէարկութեան դիմուի, եկեղեցական կալուածներու գրաւման և կրօնական նոր խստութիւններու առթիւ։ Նախագահը մերժեց այս առաջարկը։ Հակառակ ասոր, բարձրաստիճան անձերու կողմէ ձեռնարկներ կ՚ըլլան ներկայ տագնապին վերջ տալու համար։

Կարեւոր դրամատէրերու խմբակ մը Նախագահին ներկայանալով, յայտնեց թէ Մեքսիկայի դրամատուններուն մէջ պահ դրուած 17 միլիոն փէզօյի գումար մը ետ քաշուած է կրօնական կռիւներուն հետեւանքով։ Եթէ տագնապը շարունակուի, ժողովուրդը պիտի խուժէ դրամատուններուն վրայ, պահանջելու համար պահեստի դրամները, և այդ պարագային ելմտական ծանր ճգնաժամ մը առաջ պիտի գայ ամբողջ երկրին մէջ։ Դրամատէրերը իրենց իրաւախոհութիւնը առաջարկեցին տագնապին վերջ տալու համար։

Ամերիկեան կառավարութիւնը պաշտօնապէս կը յայտարարէ թէ չէզոք պիտի մնայ այս կռիւներուն մէջ։

## Համասլաւական համաժողովը

Նակազաքիի համաժողովը վերջացուց իր աշխատանքները. երկու Ճաբոնցի, երկու Հնդիկ, երկու Չինացի և մէկ Փիլիպեանցի Նախագահ նշանակուեցան ասիական միութեան նոր ընկերակցութեան։ Յառաջիկայ համաժողովը պիտի գումարուի Փէքինի մէջ։

## Թրքական ցուցահանդէս-նաւը

«Գարա Տէնիզ» թրքական առեւտրական ցուցահանդէս-նաւը, որ Հավր և Լոնտոն հանդիպած էր, ճամբան շարունակելով այցելեց Ամսթերտամ, Համպուրկ, Հելսինկֆօր և հասաւ Լենինկրատ։ Քրօնշդատի մէջ նաւը դիմաւորեցին հիւպատոսը, վաճառականներ և կառավարական պաշտօնեաներ։ Պաշտօնական ընդունելութեան առեն ռուսեւթուրք եղբայրութեան մասին խանդավառ ճառեր խօսուեցան, որոնց պատասխանեց Անգորայի երեսփոխան Բէմզի պէյ։

## Մարզպանը Սուրիա կը դառնայ

Սուրիոյ մարզպան Պ. տը Ժուվնէլ, որ քանի մը ամիսէ ի վեր Փարիզ կը գտնուէր, Օգոստոսի վերջերը պիտի վերադառնայ Սուրիա, ուր պիտի մնայ մինչեւ Հոկտեմբեր։ Այս կերպով կը հերքուի կարգ մը թերթերու տուած այն լուրը թէ Պ. տը Ժուվնէլ, Թուրքիոյ դեսպան պիտի նշանակուի։ Այս վերջին պաշտօնին համար դարձեալ կը խօսուի Ֆրանքլէն Պույեօնի մասին։

## Պրիան եւ Լիթվինօֆ կը տեսակցին

Պ. Պրիան Երեքշաբթի օր ընդունեց Խորհրդային Միութեան արտաքին գործավարի օգնական Լիթվինօֆը, որուն կ՚ընկերանար Փարիզի խորհրդային դեսպանատան գործակատար Պ. Դաւթեան։

## Խռովութեան մը պատմութիւնը

Թաւրիզէն կը գրեն մեզի.—

Վերջերս Սալմաստ գաւառի մէջ 400 պարսիկ կազախ զինուորներ ըմբոստացան իշխանութեան դէմ, թալանեցին Դիլման գիւղաքաղաքի շուկան, սպաննեցին իրենց հրամանատարը, կտրատեցին հեռագրաթելերը եւ ջանացին ըմբոստութիւնը տարածել ամբողջ Ատրպատականի զօրամասերուն մէջ։ Այս դէպքերը ծայր առին Յունիսի 22ին։ Յաջորդ օրը Թաւրիզէն 40 օթօներով զինուորներ ղրկուեցան Սալմաստ, ըմբոստներուն զսպելու համար, մինչ ուժեղ զօրամաս մըն ալ ուղեւորուեցաւ հասնելու եւ բանի մը օրուան մէջ ըմբոստութիւնը խստօրէն զսպուեցաւ։ Ըմբոստ զինուորները փախան Խոյ եւ Մակու, ուր ձերբակալուեցան։ Ապստամբներէն 50 հոգի գնդակահարուեցան, զինուորական դատարանի վճռով։ Ապստամբները առարկած են, որ 6 ամիս ռոճիկ չստանալով եւ տնտեսական ծանր պայմաններու մէջ ապրելով ըմբոստացեր են։

## Թուրք նաւ մը ընկղմած

Պոլիսէն առնուած հեռագիր մը կ՚ըսէ թէ ֆրանսական «Լօթիւս» շոգենաւը բախում մը ունեցած է Թրքական «Պօզ Քուրթ» ածխաբարձ շոգենաւին հետ։ «Պօզ Քուրթ» ընկղմեցաւ. ութը նաւաստիներէն ծովուն տակը գացին։ «Լօթիւս» ծանր վնասներ կրելով հասաւ, յաջողեցաւ Պոլիս հասնիլ։

## Եկեղեցական նոր կանոնագիր

Էջմիածնի Գերագոյն Հոգեւոր Խորհուրդը առաջամայ նոր կանոնագիր մը պատրաստած է եւ կաթողիկոսի վաւերացման ենթարկելէ յետոյ զրկած է բոլոր թեմերուն, գործադրութեան համար։ Այս կանոնագիրը կ՚ըսէ թէ Հայ եկեղեցւոյ կանոնները Մայրենիք Ազգ. եկեղ. ժողովին եւ մի պիտի գումարուի Էջմիածին՝ համագումարին եւ նախաձեռնութեամբ կաթողիկոսին։ Եկեղեցւոյ կաթողիկոսը, Երուսաղէմի եւ Պոլսոյ Պատրիարքները ժողովի նախագահ անդամներն են։

Ազգ. եկեղ. ժողովը կ՚ըմբռնէ կաթողիկոսը, երբ աթոռը թափուր ըլլայ, կը հաստատէ Ազգ. եկեղ. Սահմանադրութիւնը, կ՚ընտրէ Գերագոյն Հոգեւոր Խորհուրդի անդամները, եկեղ. բարենորոգման հարցերը կը քննէ, եկեղ. տնտեսական վիճակը կը

կարգաւորէ եւ կը վճռէ եկեղ. բոլոր խնդիրները։ Այս ժողովին կը մասնակցին Էջմիածնի գերագոյն հոգեւոր խորհուրդի անդամները, բոլոր առաջնորդները, բոլոր եպիսկոպոսներ կը մասնակցին նաեւ Էջմիածնի եւ Երուսաղէմի միաբանները եւ Պոլսոյ խառն ժողովը մէջ մէկ ներկայացուցիչով։ Մինչեւ 25.000 ժողովուրդ ունեցող թեմը կ՚ընտրէ մէկ պատգամաւոր եւ իւրաքանչիւր 25,000ին մէկ մէկ պատգամաւոր։ Պատգամաւորի ընտրութիւնը կը կատարուի քուէով. այր եւ կին չափահաս ծխականները քուէի իրաւունք ունին, ընտրութիւնները հրապարակուին դուռը տեղական օրէնքներով կը կատարուին։ Երբ կաթողիկոս. Ամեն թափուր մնայ, տեղապահ եկեղ. ժողովը կը հրաւիրէ Էջմիածին և կաթողիկոսի մահէն մինչեւ 6 ամիս նոր կաթողիկոսի ընտրութիւն կը կատարուի։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՈՒՈՒՍԻԱՅԻ պէտք ալ փարիզ հասաւ եւ պիտի մեծարուի պաշտօնական ընդունելութիւններով, ինչպէս Մարոքի Սուլթանը, որ մեկնեցաւ։



## ՍԱԿԱՐԱՆ

5 Օգոստոս 1926

ԴՐԱՄՆԵՐ

| | | |
|---|---|---|
| Անգլիա | L. St. | 172 |
| Տոլար | Dollar | 35 |
| Մարք (ոսկի) | Mark | 8 |
| Թրքական ոսկի | L. Trq. | 18 |
| Թրք. ոսկի | » or | 153 |
| Մէճիտիէ | Médjidié | 8 |
| Լէվա 100 հատը | Léva | 25 |
| Տրախմի | Drachme | 43 |
| Լիր | Lire | 117 |
| Պելճ. ֆրանք | Frc. Belge | 99 |
| Զուից. | Frc. Suisse | 680 |
| Լէյ 100 հատը | Ley | 18 |
| Ռուբլին | (10 Roubles or) | 175 |

ԱՐԺԵԹՂԹԵՐ

| | | |
|---|---|---|
| Եգ. ֆր. Ֆոնսիէ | I Ct. Fonc. Eg. | 4200 |
| » | II » | 2800 |
| » | III » | 2006 |
| Թուրքի երկաթ. | Lots turcs | 155 |

Comptoir Parisien de change et de Crédit 80, Rue Lafayette


Le Gérant: H. TEURNIER

Impr. MASSIS 208bis, Rue Lafayette Paris(10e)

